

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Նա մեր սրտերն է իրար կամրջում
Եվ հուզում է մեզ ազնիվ երգի պես,
Հեռավոր ճամփան այնպես է կարճում,
Որ դու հեշտ անցնես։
Հոգիդ լեցուն է, երբ սիրով մաքուր՝
Չկան փակ դռներ արդեն քեզ համար,
Բոլոր ազգերը եղբայր են ու քույր՝
Հավատով անմար։
Քեզ նրա շնչով զգում ես թեթև,
Հեշտ ես քո ճամփից սև ամպը վանում
Բարեկամներից առնում ես դու թև
Ու զորեղանում։







# ՄԵՐ ՀՅՈՒՐԸ «ՊԼՅՈՒՄԱ» ՋՈԿԱՏԸ

«Արտեկ» համամիութենական պիոներական ճամբարում տեղի ունեցավ պատանի թղթակիցների հավաք։ Երկրի բոլոր ծայրերից այստեղ էին եկել գրչի պատանի ասպետները ծանոթանալու միմյանց հետ, պատմելու իրենց լավ գործերի մասին։ Այստեղ էին նաև Պյատիգորսկ քաղաքի «Պլյումյա» թղթակցական ջոկատի անդամները։ Այն գործում է 1976 թվականից, նրա անդամները «Պիոներսկայա պրավդայի» ակտիվ թղթակիցներն են։

Ջոկատն ունի թմբկահարների և շեփորահարների, կինոսիրողների, լուսանկարիչների և ժուռնալիստների խմբեր։ Նրանք շրջում են Ստավրոպոլի երկրամասում, հյուր լինում իրենց հասակակիցներին և նրանց գործերի մասին պատմում երկրամասի թերթերում։

Հետաքրքիր էր «Ռոմանտիկայի հասցեներ» նրանց օպերացիան։ Այն երեխաներին տարավ երկրամասի 6 խոշոր կոմերիտական-հարվածային կառույցները։ Իրենց հանդիպումների մասին երեխաները պատմեցին թերթերում, հեռուստատեսությամբ։

Իսկ «Գվարդիա» օպերացիան նրանց

տարավ Կովկասի համար մղված կռիվների մարտական փառքի վայրերով:

Ջոկատի անդամները ոչ միայն լավի մասին էին պատմում, այլև պայքարում են վատի ու թերությունների դեմ:

Իզուր չէ, որ ջոկատ ընդունվող ամեն մի դպրոցական երդվում է լինել արդարամիտ, համառ, սկզբունքային, պայքարել թերությունների դեմ:

Ջոկատը ղեկավարում է Եվգենի Ֆիլիպկովը, նա անգլերենի ուսուցիչ է, իսկ ջոկատում՝ երեխաների ավագ ընկերն ու բարեկամը, խորհրդատուն: Հենց նա էլ մեզ է տրամադրել այս թղթակցությունները:

# ԻՆՉՊԵՍ ԵՂԱՎ «ՊԼԱՄՅԱ»

Մի անգամ մեր դասարանի աղջիկները՝ Գալյան, Յուլյան և Սվետան ասացին, որ ընդունվել են պատանի թղթակիցների «Պլամյա» ջոկատ և երեկոները վախենում են մենակ տուն վերադառնալ: Մենք՝ դասարանի տղաներով որոշեցինք ամեն երեկո նրանց դիմավորել:

Առաջին օրը նրանց հանդիպեցինք ճանապարհի կեսին, բայց պարզվեց, որ նրանց արդեն ճանապարհում է ինչ-որ մի տղա՝ ջոկատից: Նրա անունը Բորյա էր: Ինչպե՞ս էինք ցանկանում նրան ծեծել, որ մեր դասարանի աղջիկներին այլևս չճանապարհի: Բայց այս անգամ որոշեցինք ոչինչ չասել:

Հաջորդ օրը մենք նորից գնացինք դիմավորելու Գալյային, Յուլյային և Սվետային: Այդ երեկո աղջիկները անընդհատ պատմում էին ջոկատի ինչ-որ Դիմայի մասին: Մենք, չգիտեմ ինչու, նրան էլ ցանկացանք ծեծել...

Հաջորդ օրը մենք չգնացինք աղջիկներին դիմավորելու:

Հետո աղջիկները մեզ հայտնեցին «Պլամյա» ջոկատի հրամանատարների խորհրդի հրավերը: Առաջին ծանոթս եղավ Անդրեյ Լունյովը: Նա շատ հետաքրքիր բաներ պատմեց մեր ջոկատի մասին: Ցույց տվեց ջոկատի ծրագիրն ու կանոնադրությունը: Հետո մեզ հրամանատարների խորհուրդն առաջարկեց դառնալ ջոկատի անդամության թեկնածու: Ես ուրախությամբ համաձայնեցի: Սկզբում անդամության թեկնածու էի, իսկ վերջերս էլ անդամ դարձա:

Դիման, պարզվեց, որ ջոկատի դրոշակակիրն է: Նա թիկնեղ և ուժեղ տղա է, այնպես որ, եթե կռվեինք, մեզ երեքիս էլ մենակ կհաղթեր:

*ԻԳՈՐ ՌԻԺՈՎ*

*№ 9 դպրոց, 7-րդ դաս.*

# ՍՐԱՄԻՏ ՎՈՎԿԱՆ

Դասերից հետո յոթերորդցիները հավաքվեցին պիոներսենյակում:

— Վաղը մետաղի ջարդոն ենք հավաքելու,— ասաց ջոկատի խորհրդի նախագահ Նինան:

— Ի՞նչ,— դժգոհեցին աղջիկները:

— Ի՞նչ ջարդոն,— առարկեցին տղաները:

— Նորից երկաթի կըտորտանք պիտի քարշ տանք,— վերջին նստարանից մրթմրթաց Վովկան:

— Ախր դու երբեք չես աշխատել,— բարկացավ օղակավար Վիկան:

Եվ ամեն մեկն սկսեց բարձրաձայն ասել, թե անցյալ տարի ինքը որքան ջարդոն է հավաքել: Բղավում էին բոլորը և ոչ ոք չէր ուզում լսել մյուսին: Նինան չդիմացավ և վազեց ավագ ջոկատավարի ետևից:

— Լռեցեք,— ներս մըտավ ավագ ջոկատավարը:

Բոլորը լռեցին: Իսկ Վովկան պայուսակից կարկանդակ հանեց: Ջոկատավարը պատմեց, թե ինչ են պատրաստում մեր հավաքած մետաղից՝ կամուրջներ, երկաթգծեր, գնացքներ... Երբ վերջացրեց, Վովկան արդեն հինգերորդ կարկանդակն էր ուտում:

Ջոկատավարը գնաց: Աղջիկներն էլ տուն վազեցին: Իսկ տղաները դեռ երկար համոզում էին Վովկային վաղը գնդակ բերել դպրոց:

Հաջորդ օրը միայն աղջիկներն էին հավաքվել դպրոցում:

Տղաները սպորտհրապարակում էին: Սերյոժան կանգնել էր դարպասի մոտ:

— Սերգեյ, օգնիր կոտըրված մեքենայի թափքը քարշ տանք դպրոց,— խնդրեց Նինան:

— Հեռու գնա, թե չէ քո պատճառով գոլ կըխփեն,— ձայն տվեց նա և նետվեց դարպասը պաշտպանելու:

Երբ հաշիվն արդեն 4:3 էր, հորիզոնում ինչ-որ մեծ բան երևաց: Այն մոտենում էր ու մոտենում և, վերջապես, կանգ առավ ֆուտբոլի դարպասի մոտ: Աղջիկները մեքենայի թափքն էին քարշ տալիս:

— Գնանք օգնենք,— ասաց Վովկան:

— Դե լա՛վ, իրենք քարշ կտան,— ձեռքը թափ տվեց Սերյոժան:

Բայց Վովկան գնաց: Գնդակը նետեց թափքի մեջ և օգնեց աղջիկներին ջարդոնը տեղ հասցնել...

Արդյունքներն ամփոփելիս պարզվեց, որ իրենց ջոկատն առաջին տեղն է գրավել: Բոլորից շատ Վովկան էր ուրախացել:

Երբ ջոկատին փոխանցիկ դրոշ էին հանձնում, տղաները լռել էին և ամաչում էին նայել աղջիկներին: Հետո որոշեցին, որ հիմա ամեն գործ միասին կանեն:

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԺԻՏՆԻԿ*
*№ 5 դպրոց, 7-րդ դաս.*

# ԱՅ ՔԵԶ ԺԱՄԱՆՑ

«Դասղեկի ժամ». լըսելուն պես 7-րդ Բ-ն դժկամությամբ շարժվեց դեպի կենսաբանության կաբինետ: Բոլորն էլ գիտեն, որ դասղեկի ժամը նախատեսված է դաստիարակական գործերի համար:

Եկեք մտնենք այդ ժամին 7-րդ Բ: Այստեղ խոսում են մետաղի ջարդոնի հավաքման, պիոներական օպերացիաների մասին: «Բայց չէ՞ որ դրանք պիոներական ջոկատի գործերն են»,— կզարմանաք դուք: Իհարկե, եթե դասղեկի ժամերը վերածվեն ժողովի, որտեղ անընդհատ դասղեկը խոսում է այն մասին, թե ինչ պիտի անեն, որ չեն արել, ձանձրալի կդառնա ամեն ինչ:

Իսկ մեղավորը մենք ինքներս ենք: Չէ՞ որ ամեն պիոներ ունի իր իրավունքները, իր պիոներական հանձնարարությունը: Բայց շատերը նույնիսկ մոռացել են այդ մասին: Իսկ անտարբերությունը սկսվում է հենց ընտրություններից: Այ, օրինակ, Օլեգ Դենիսովին այդպիսի «դասղեկի ժամ-հավաքույթից» դուրս հանեցին՝ խանգարելու համար: Հետո, հենց այստեղ էլ նրան ընտրեցին դրուժինայի խորհրդի անդամ: Եվ ի՞նչ. նա բացակայում էր նիստերից, չէր կատարում հանձնարարությունները:

Իհարկե, դասղեկն էլ շատ է ուզում, որ դասարանը ետ չմնա ոչ մեկից և իր ձեռքն է վերցնում նաև ջոկատի ղեկավարությունը: Եվ ստացվում է դասղեկի ժամ՝ «Ջոկատային հավաքույթ» թեմայով:

Իսկ գուցե դա միայն մե՞զ մոտ է՝ 7-րդ Բ-ում:

*ՄԻԽԱՅԻԼ ԼՈԻՆՑՈՎ*
*7-րդ դաս.*

# ՄԻ ԱՆԳԱՄ ԵՐԵԿՈՅԱՆ...

Աշնանային տաք երեկո էր: Ընկերներով տուն էինք վերադառնում՝ ուրախ խոսելով ու ծիծաղելով, այդ պատճառով էլ չնկատեցինք երեք ստվերների, որոնք մեզ ընդառաջ էին գալիս: Հավասարվելով մեզ, նրանցից մեկը՝ Սերգեևը, թաղամասի «կովարարների» գլխավորը, մարտահրավերի տոնով դիմեց Դիմային.

— Ծխախոտ տուր:

Չցանկանալով կռվի բռնվել, Դիման հանգիստ պատասխանեց.

— Չեմ ծխում:

Նրա հանգիստ տոնը դուր չեկավ Սերգեևին և նա արհամարհանքով չափեց բոլորիս:

Մենք՝ Դիմկան, Միշկան, Իգորը պիոներներ էինք և չէինք ուզում բը-

ունքներով հարցեր լուծել։

— Գնա՛ այստեղից,— Սերգեևը բռնեց Դիմկայի օձիքից։

— Ձեռքերդ հեռու տար,— հանգիստ ասաց Դիմկան։

Սերգեևը խփեց նրան։ Մենք վախեցած նայում էինք, թե ի՞նչ է լինելու հետո։ Դիման պաշտպանվում էր, ինչպես կարող էր։ Տուն գնալիս նրա աչքի տակ մի մեծ կապտուկ կար։

Մի քանի օր հետո ջոկատ եկավ Սերգեևը և ներողություն խնդրեց։ Գուցե վախեցավ անախորժություններից կամ գուցե հասկացել էր, որ ստորություն է արել (չէ՞ որ նա մեծ էր Դիմկայից երկու տարով)։

Վաղուց անցել է այս դեպքը. Դիման էլ երբեք չի հիշեցնում այդ։ Բայց ես չեմ կարողանում մոռանալ։ Ես հասկացել եմ և չեմ ամաչում ասել. «Այո՛, մենք դավաճանեցինք մեր ընկերոջը»։ Չէ՞ որ մենք՝ երեք տղաներից և ոչ մեկս չփորձեցինք պաշտպանել Դիմային։ Կարծում եմ, որ այդպիսի բան ինձ հետ այլևս չի կրկնվի։

*ԷԴՈՒԱՐԴ ԿՈՆՈՇԵՆԿՈ*
*7-րդ դաս.*



# ՀԱՅՐԵՆԻՔ

Ես գիժ ու մաքուր մի նոր վտակ եմ,
Գալիս եմ մեր հին լեռների խորքից,
Եվ ծառն եմ ես այս, որ ժպտում է ջերմ՝
Լեռան աժդահա քարերի գրկից։

Եվ արևն եմ այս ու հողն այս բարի
Ու ցորենը այս, որ հաց պիտի դառնա․
Ես երկինքն եմ այս ու մարդն այս հողոտ,
Որ ստեղծում է համառ ու համառ,
Որ դառնում է հող ու նորից ծնվում՝
Ցորեն հաց, մասունք դառնալու համար։

*ԳՈՀԱՐԻԿ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ*
*Երևան, № 74 դպրոց, 10-րդ դասարան*



ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

# ԱՐԵԳ, ՈՐԴԻ ՍԱՐԳՍԻ, ԴԵՄԻՐԽԱՆՈՎ

Հիշե՛ք այս անունը։ Մի օր, երբ ճամփորդելու գնաք Սիբիր ու շրջագայեք Կրասնոյարսկ քաղաքում, ամեն քայլափոխի լսելու եք այն։

Առաջին ցնցող տպավորությունը ձեզ վրա թողնելու է աքսորյալ դեկաբրիստների հուշարձանախումբը։ Առասպելական այդ հերոսների շարքի առջև քարանալով, մտովի տեսնելու եք, թե ինչպես հարություն առան նրանք· անջատվեցին գրանիտե պատից և քայլեցին դեպի իրենց շուրջը խռնված մարդիկ։ Նրանց շղթաների զնգոցի միջից դուք լսելու եք էքսկուրսավարի երկրային ձայնը. «Այս համալիրի հեղինակն է ճարտարապետ Արեգ որդի Սարգսի Դեմիրխանովը (իսկ քանդակագործն է Իշխանովը, նույնպես հայ)»։

Փշաքաղվելու եք, երբ ոտք դնեք Հայրենական պատերազմի զոհերին նվիրված հիշատակի համալիրը. ընդարձակ մի հրապարակ, քաղաքային գերեզմանատանը կից։ Համալիրը գերեզմանատնից անջատել, իր մեջ է առել Կրասնոյարսկի հոսպիտալներում վախճանված և այստեղ հողին հանձնված մարտիկների շիրիմների շարքը։ Յուրաքանչյուր շիրմաքարի վրա՝ իր սաղավարտը, կողքին՝ մարմարե ճերմակ սալիկ· վրան՝ զոհված մարտիկի անուն-ազգանունը, ծննդյան ու մահվան տարեթվերը։ Շիրիմների շարքի առջև, ընդարձակ հրապարակում, ասես մարտական պատրաստ դիրքով կանգնած են պատերազմին մասնակցած իսկական հրանոթներ, պատերազմին մասնակցած մի իսկա-

կան տանկ, ձախ կողմը՝ եղբայրական դամբարանի շինությունը. առջևը Հավերժական կրակ, իսկ ներսում քարե պատերին, առաստաղից մինչև գետին շարքերով փորագրված են Կրասնոյարսկի հոսպիտալներում մահացած և Կրասնոյարսկ քաղաքից ռազմաճակատներում զոհված մարտիկների անունները՝ ավելի քան տասնմեկ հազար անուն: Տասնմեկ հազար մարդ է հառնում ձեր աչքի առաջ և նրանց անձայն շշուկների հետ լսվում է էքսկուրսավարի երկրային ձայնը. «Այս համալիրի հեղինակն է ճարտարապետ Արեգ որդի Սարգսի Դեմիրխանովը»: Մինչ տարեցները անշարժ կանգնած դիտում են համալիրը, անչափահասները վազվզում են հրապարակում, հեծնում հրանոթներին, մագլցում տանկի վրա. նրանց համար դրանք զվարճալիք և խաղալիք են. միայն ավելի մեծ չափերի: Իսկ էքսկուրսավարը շարունակում է պատմել. մատնացույց է անում համալիրին կից գերեզմանատան կողմը և հայտնում, որ այնտեղ է թաղված նշանավոր հեղափոխական Սուրեն Սպանդարյանը: Բավական է գերեզմանատան մուտքից ներս մըտնել, եկեղեցու դռանը չհասած թեքվել ձախ, մի փոքր փնտրել և կկանգնեք Սուրեն Սպանդարյանի շիրիմի առաջ, որի վրա կրասնոյարսկցիները մի բարձր հուշարձան են կանգնեցրել:

Ձեզ անպայման կառաջնորդեն այն հրապարակը, որի վրա է գտնվում Կրասնոյարսկի օպերայի և բալետի թատրոնը: Դուք կդիտեք ճարտարապետական մի ծավալուն համալիր, որի մեջտեղը ծաղկի ու կանաչի լճակներ են՝ մեկը մյուսին չկրկնող, բայց իրար հետ խոսող: Կդիտեք այդ ֆոնի վրա բարձրացած բազմահարկ շենքեր: Մինչ ձեր հայացքը կջանա ընդգրկել այդ մեծազանգված համալիրը, ձեր ականջը հեշտությամբ կորսա էքսկուրսավարի ձայնը. «Նոր Կրասնոյարսկի դիմագծին բնորոշ այս համալիրի հեղինակն է ճարտարապետ Արեգ որդի Սարգսի Դեմիրխանովը»:

Ահա ևս մի համալիր, որ կառուցվում է ծովածավալ ծփացող Ենիսեյ գետի ափին: Ավարտված կլինի այն, երբ դուք այցելեք Կրասնոյարսկ: Գործելիս կլինեն զույգ՝ մեծ ու փոքր համերգասրահները, որոնց բոլոր ճեմասրահներից ու սրահներից տեսարան է բացվում դեպի մեծն Ենիսեյը: Այս համալիրի մեջ է մտնում դիմացի մայթի վրա, ճիշտ Ենիսեյի ափին կառուցվելիք Վ. Ի. Լենինի թանգարանը, որը Մոսկվայի Լենինյան կենտրոնական թանգարանի մասնաճյուղն է հանդիսանալու: Այդ թանգարանի մեջ է հանգրվանելու «Սուրբ Նիկոլայ» նավը, որով աքսոր

ուղարկված Լենինը 1897 թվականի ապրիլի 30-ին ափ իջավ Կրասնոյարսկում: Այդ նավն այժմ խարիսխ գցած, կանգնած է փոքր-ինչ հեռու, Ենիսեյի ափին: Երբ դուք կանգնած դիտելիս լինեք այս համալիրը, ձեր ականջին կհասնի էքսկուրսավարի ձայնը. «Այս համալիրի հեղինակն է ճարտարապետ Արեգ որդի Սարգսի Դեմիրխանովը»:

Այս քաղաքի շատ տների վրա դուք կհանդիպեք հուշատախտակների այն մասին, որ աքսորի տարիներին այս տունն է այցելել Վ. Ի. Լենինը, հանդիպել հեղափոխական այսինչ ընկերոջը, այս տանը սենյակ է վարձել, այստեղ գրել է իր այսինչ աշխատությունը:

Կրասնոյարսկը Սիբիրի ամենահնագույն քաղաքն է, հիմնադրվել է 1628 թվին: Այստեղ է ծնվել ռուս գեղանկարչության նշանավոր դեմքերից՝ Սուրիկովը: Պահպանվել և թանգարանի է վերածվել այն տունը, որտեղ ծնվել է նա, և հետագայում, արդեն անուն հանած նկարիչ, ամեն ամառ գալիս էր հայրական օջախի քաղցրությունն ու հայրենի բնությունը վայելելու: Սուրիկովն աղքատ ընտանիքի զավակ էր, նրան իր միջոցներով Պետերբուրգ կրթություն ստանալու է ուղարկել Կրասնոյարսկի մեծահարուստ՝ ոսկի արդյունաբերող Կուզնեցովը, որի անունը պատմության փոշիների մեջ կորած կլիներ, եթե կապված չլիներ Սուրիկովի անվան հետ:

Մեր Միության արդյունաբերական ամենախոշոր կենտրոններից է Կրասնոյարսկը և ամենահարուստներից է Կրասնոյարսկի երկրամասը: Նրա տերիտորիան 2.148 հազար կիլոմետր է. հաշվեք, թե քանի անգամ է մեծ Հայաստանից: Ի՞նչ հանքային հարստություն ասես որ չունի: Այստեղի ածխահանքերը շահագործելու համար չի պահանջվում թափանցել երկրի ընդերքը: Բաց հանքեր են՝ ածխալեռնաշղթաներ. էքսկավատորի շերեփը գցիր, հավաքիր, բեռնիր գնացքները, ուղարկիր ուր հարկն է: Սպառվել չկա այդ ածխահանքերին: Գիտնականների հաշվումներով, ամենաանխնա շահագործման դեպքում անգամ, 700 տարվա ածխի պաշարներ կան այդտեղ: Անտառարդյունաբերության մասին ի՞նչ ասես. ողջ Սիբիրը ծածկված է անտառներով: Նրա ջրային ռեսուրսների մասին ի՞նչ ասես. ուր անտառ չի՝ ջուր է, ձկնառատ գետեր ու լճեր: Իսկ ջուրն էժան էլեկտրաէներգիա է: Ենիսեյի վրա կառուցված Կրասնոյարսկի էլեկտրակայանը ամենահզորն է աշխարհում, ոչ միայն իր կառուցման տեխնիկայով է բացառիկ, այլև գեղարվեստական գրավիչ տեսքով, Կրասնոյարսկի տեսարժան վայրերի թագն ու պսակն է համարվում:

Քաղաքի օր-օրի հզորացող արդյունաբերության ոչ մի ճյուղի հումքը դրսից չի բերվում: Ինչ արտադրվում է, արտադրվում է տեղական նյութից: Պատկերացնելու համար, թե որքան հարուստ է Կրասնոյարսկի երկրամասը, բավական է մտնել Կրասնոյարսկի քաղաքային թանգարանը, անցնել սրահից սրահ, տեսնել այս երկրամասի բուսական ու կենդանական աշխարհի, ընդերքի, արտադրության նմուշները:

Ռուսների հետ ուս ուսի աշխատում են այստեղ սովետական բազմազգ երկրի այլ ժողովուրդների զավակներ: Նրանց ընդհանուր ջանքերով քաղաքն օր օրի հզորանում է, հետն էլ գեղեցկանում:

Տարիներ հետո, երբ դուք այցելեք Կրասնոյարսկ, ձեր էքսկուրսավարը

մատնացույց կանի տեսարժան նոր կառույցներ, որ դեռ չեն ծնվել, և դուք ավելի ու ավելի շատ կլսեք Արեգ որդի Սարգսի Դեմիրխանովի անունը, որին արդեն իսկ շնորհվել է վաստակավոր ճարտարապետի տիտղոս:

Այս տարի լրացավ նրա հիսուն տարին: Աշխատանքային ընկերները հոբելյանի առիթով մի ծավալուն ալբոմ են նվիրել նրան, յուրաքանչյուր բացվածքի մի էջի վրա նրան ձոնած մի բանաստեղծություն, հանդիպակաց էջի վրա էլ մի ծաղրանկար: Մի քառատողի մեջ ասված է՝ «Արեգ Դեմիրխանով, դու հայ ճարտարապետ ռուսների մեջ և ռուս ճարտարապետ հայերի մեջ, դու զավակ հայ ժողովրդի և զավակ ռուս ժողովրդի»: Ծաղրանկարներից մեկը ներկայացնում է ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանի Երևանում կանգնեցված հուշարձանը՝ Թամանյանի գլխի փոխարեն Արեգ Դեմիրխանովի գլուխը, որով ծաղրանկարի հեղինակները թերևս կամեցել են ասել, թե այն ինչ արել է ճարտարապետ Թամանյանը Երևան քաղաքի համար, դու անում ես Կրասնոյարսկի համար և օրերից մի օր Կրասնոյարսկի հրապարակներից մեկում էլ արժե որ ահա այսպես բարձրանա քո հուշարձանը: Մի այլ ծաղրանկարում պատկերված է մեր Մատենադարանի առջևի Մեսրոպ Մաշտոցը, հայոց այբուբենի հետ, և եկել նրա առջև չոքել է բարալիկ, նիհար թևերով, վտիտ Արեգ Դեմիրխանովը, ձեռքին գծագրերի փաթեթ, և պետք է ենթադրել, որ մեծն Մեսրոպ Մաշտոցին խնդրում է. «Հայոց մատենագրության մեջ չմոռանալ հիշատակելու նվաստիս անունը, քանզի ես էլ շատ եմ տքնել ու իմ բազում վաստակով պանծացրել հայոց անունը հեռավոր Սիբիրի Կրասնոյարսկ քաղաքում: Անունս է Արեգ, որդին եմ Սարգսի, որ թոռն էր ողջ Լոռում անուն հանած քաջն Դեմիրխանի, ծնյալ Գյառգյառ գյուղում»: Լսեցի՞ք: Միտներդ պահեք: Երբ ճամփորդելու գնաք Սիբիր և շրջագայելու լինեք Կրասնոյարսկ քաղաքում, ամեն քայլափոխի լսելու եք այս անունը:







# ԳԱՅԼԻՑ ՎԱԽԵՑՈՂԸ

Նրանց ընտանիքում համարյա բոլոր տղամարդիկ հովիվներ են, կանայք՝ կթվորուհիներ: Երբ հովիվ պապերն այնքան են ծերանում, որ այլևս չեն կարողանում քայլել ոչխարի ետևից, մահակները տալիս են թոռներին: Ամռանը նրանց տանը մնում է միայն երկու տարի առաջ սարերից վերջնականապես իջած իննսունամյա տատը: Մի քանի տարի առաջ նրանց ամբողջ գերդաստանն էր սարերում, և հարյուրամյա Կարապետ պապի օրերը հոսում էին պարզ ու վճիտ: Հիմա նա չկա: Նրա տեղը հիմա անցել է արդեն մեծացած թոռներին, որոնք ծանոթ են սարերի բոլոր հովիվներին, ում հետ հաց է կտրել նրանց պապը:

Աշնանը, երբ ամայանում են սարերը և ոչխարը բռնում է ձմեռանոցների ճամփան, Կարապետ պապի թոռները իջնում են սարերից ու գնում դպրոց: Սեպտեմբերն ու հոկտեմբերը բերքահավաքի ամիսներ են: Սեպտեմբերի 1-ին հավաքվում են բոլոր երեխաները, սկսվում են դասերը, որոնք տևում են... մի շաբաթ կամ տասն օր: Այնուհետև դպրոցականները դառնում են դաշտերի ջանասեր աշխատավորներ: Միայն թոն ու թաց օրերին, երբ հնարավոր չի դաշտում աշխատել, նրանք գնում են դասի՝ աչքերը ամպերի մեջ կորած արևին, որ կարող է դուրս գալ և բրիգադիրը խնդրի դիրեկտորին, թե կարտոֆիլը դաշտում փչանում է, էսօր-էգուց կարող է ձյունը նստի, թող երեխեքը...

Այդ երեխաները Վրացական ՍՍՀ Ծալկայի շրջանի Այազմա գյուղի ութամյա դպրոցի աշակերտներն են: Այդ եռուն օրերին Կարապետ պապի թոռները նրանց մեջ չեն: Ամբողջ ամառն ու աշունը արև ու ցուրտ, քամի ու թաց օրերին նրանք սարերում քայլում են սովխոզի չորս հարյուր ոչխարի և երկու հարյուր գառների ետևից: Սովխոզի Այազմայի բաժանմունքի ավագ հովիվը նրանց հայրն է: Բայց ոչխարի մոտ, գիշերները, հովվի կիսարթուն քնով հիմա քնում են տասներորդ դասարան-





# ՇՈՎԻՎ ՉԻ ԴԱՌՆԱ

ցի Կարապետ Այվազյանն ու դպրոցն այս տարի ավարտած Կարինե քույրը, ութերորդ դասարանցի Ծաղիկն ու յոթերորդ դասարանցի Գագիկը:

Նրանք սար են բարձրացել տասնհերկու տարեկանից, երբ կարողացել են հաշվել չորս հարյուր ոչխարն ու երկու հարյուր գառը և չվախենալ մենակությունից ու սարերում նստող անթափանց մառախուղից:

Գյուղում հին հովիվներ արդեն համարյա չկան: Եղածներն էլ ծերացել են ու վերջնականապես իջել սարից: Բայց սովխոզը դեռ հովվի կարիք չի զգում, որովհետև Կարինեից ու Կարապետից լավ հովիվներ շատ քիչ կան: Ավելի շատ բան է պահանջվում գառների հովվից, որովհետև թե՛ կթու ոչխարը և թե՛ գառները արածում են նույն սարերում, իրարից բաժանված են մի ծըմակով կամ ձորով, և գառը յուրաքանչյուր պահ ցանկանում է վազել մոր մոտ: Երբ երեկոյան Սուրբ Հովհաննես սարի լանջի բինայում հավաքվում են Կարինե և Կարապետ հովիվներն ու Ծաղիկ և Գագիկ գառնարածները, ամենահոգնածը լինում են գառների հովիվները:

Երեկոյան կողք կողքի երկու փարախներում էլ որոճում է ոչխարը: Փարախների շուրջը, իրենց մշտական տեղերում, նստած են գամփռները: Երկինքը հեռվից դղրդում է, ու դեռ աչքով անորսալի կայծակները դանդաղորեն մոտենում են: Բինայում, խորհրդավոր մթում, վառվում է լամպը:

Ծները քարի նման անշարժ ու լուռ են և լարված: Ամպի որոտների հետ սարի կատարից ներքև է սահում թաց ու անթափանց մառախուղը: Հետո խշշոցով գալիս է սարի առատ, խոշորակաթիլ անձրևը: Սարի թեք լանջին ծվարած բինայի հիմնե կտուրից կաթկթում է, և գետինը դառնում է ցեխ:

Նրանց ավագ հովիվ հայրը հաճախակի է իջնում գյուղ ու պատահում է, որ չի հասցնում նորից բարձրանալ սար և սարում մնում են միայն չորս հովիվները: Թեև նրանց մոտ հրացան կա,

որովհետև գայլը դանդաղող ու մանրացող անձրևի հետ խիտ նստած մառախուղ ու գիշեր է սիրում, ավելի վըստահելի են սովորական մահակն ու շները: Քանի թանձրանում է մառախուղը, այնքան շներն արագացնում են իրենց պտույտները փարախների շուրջը: Մոտերքում՝ գիշերվա մթան ու թանձր մառախուղի մեջ էլ թաքուն պտտվում է սոված գայլը:

Փարվանա լճից դանդաղորեն սկսում է փչել սառը քամի և ձմեռվա ցրտի պես արագ թափանցում է հովվի ոսկորներն ու պտտվում ամբողջ մարմնի մեջ: Այդ գիշերվա պահակը Կարինեն է, իսկ մյուսները՝ ականջները նրա կանչին, պառկած են տաք այծենակաճների մեջ: Մառախուղը սկսում է ցրվել, և դանդաղորեն լուսավորվում է արևելքը:

Քիչ հետո կարթնանան Կարապետ հովիվն ու Ծաղիկ և Գագիկ զառնաբածները, մի երկու բուռ անձրևաջուր կշրմփացնեն երեսներին, որ ցրվի լուսադեմի քաղցր քունը, մի-մի աման ոչխարի թանձր մածուն կուտեն, և երբ սկսի բարձրանալ առավոտվա ցողի թափանցիկ մշուշը, ոչխարն արդեն մի բերան արածած կլինի: Իսկ երբ ցերեկվա կթից հետո նրանք ոչխարը նորից քշեն արոտները, արդեն թափանցիկ ու վճիտ սարի օդից հեռու-հեռվում պարզ կերևան գյուղը և հանդերում գերանդի ծեծող հնձվորներն ու խոտ հավաքող երեխաները:

— Յոթ տարի է հովիվ եմ,— ասում է Կարինեն:

Նույնիսկ աշնան ամպ ու զամպ օրերին, երբ հոտը չի երևում մառախուղի մեջ և գայլը սոված պտտվում է ոչխարի շուրջը, այդ վեց-յոթ տարվա ընթացքում դեռ չի համարձակվել ընկնել նրանց հոտի մեջ:

— Մեզնից գայլը վախենում է,— ծիծաղելով ասում է Կարինեն:— Գայլ տեսնելիս՝ դիտմամբ շներով ընկնում եմ հետևից, որ Ծաղիկն ու Գագիկը հանկարծ չվախենան: Կարապետ պապըս ասում էր՝ գայլից վախեցողը հովիվ չի դառնա:

*ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ*




Չէ՛, Գալյայից լավը չկա,
մենք դահլիճում
վազում էինք այս ու այն կողմ
ու քրքջում,
իսկ Կոզլովը կանգնել էր լուռ,
լու՛րջ էր այնպես,
որ թվում էր թե ձանձրույթից
ինքն էլ կուզեր միանալ մեզ...

Չէ՛, Լիլիայից լավը չկա,
մենք միասին
անկյուն էինք կանգնել այսօր
երգի դասին,
իսկ Կոզլովը նայում էր ինձ,
ծամածռվում, լեզու հանում,
այնքա՛ն, մինչև
ինքն էլ եկավ կանգնեց անկյուն...

Չէ՛, Վերայից լավը չկա,
«լեզվի» դասին
ինչքա՛ն, ինչքա՛ն
լեզվին տվինք մենք միասին,
«մաթի» ժամին
խնդրի հարցում դժվարացանք,
(դժվա՛ր էր շատ)
չհասկացանք...
Բայց Կոզլովը հանգիստ ու լուրջ
լուծեց խնդիրը հիմնովին,
պատասխանը ճիշտ էր՝
գովեց ուսուցչուհին...

Իսկ հիմա դու, որ կարդում ես.
մե՞զ ես նման, թե՞ Կոզլովին...



# ԱՐՁԱԿՈՒՐԴՆԵՐ

Մեր զարթուցիչն էլ ինչո՞ւ է զնգում,
Երբ մենք արձակուրդի մեջ ենք,
Հայ-հա՜յ՝ գործի են բոլորն շտապում,
Իսկ մենք արձակուրդի մեջ ենք:
Ուզենք կցատկենք, ուզենք կաղմկենք:
Չէ՞ որ արձակուրդի մեջ ենք,
Չորեքթաթ կտանք կամ կթավալվենք:
Չէ՞ որ արձակուրդի մեջ ենք:
Վերջ ամեն ինչին, արձակուրդներ են,
Նստել եմ ահա Ժենկայի մեջքին,
Իսկ նա ձիու պես ոստնում է, դոփում,
Վերջ ամեն ինչին, արձակուրդներ են...
Բայց մայրիկն ահա, ներս է շտապում.
— Սա՞ ինչ նոր բան է...
— Արձակուրդում ենք, արձակուրդներ են...
— Հա՞, դե վեր կացեք, կանգնեցեք անկյուն,
Քանի ձեզ համար արձակուրդներ են...

*Փոխադրությունը՝*
*Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ*

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Թանկագին Հրանտ Բագրացյան.

Ձեզ գրում են Ժելեզնովոդսկի № 1 միջնակարգ դպրոցի աշակերտները: Մենք պարզել ենք, որ Դուք մեր քաղաքի հին պիոներներից եք: Իսկ մեր դրուժինան ստեղծում է «Մեր ոստանի պիոներական փառքը» ձեռագիր գիրքը՝ նվիրված Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության փառապանծ 60-ամյակին: Այդ առթիվ, շատ ենք խնդրում, մեզ տրամադրել պիոներական անցյալի մասին Ձեր հիշողությունները:

*ՍՎԵՏԼԱՆԱ ՊՈՊՈՒԳԱԵՎԱ*
*դրուժինայի խորհրդի նախագահ*

# ՁԵՐ ՔԱՂԱՔԸ ԻՆՁԱՆԻՑ ԱՆԲԱԺԱՆ Է

Սիրելի՛ երեխաներ, իմ պատանի բարեկամներ:

Ձեր նամակն ինձ անսահման ուրախացրեց, բարի հուշեր արթնացրեց, ինձ վերադարձրեց մանկության լույսը: Շատ զարմանալի է, թե ինչպե՞ս եք ճշտել, որ ես ժամանակին եղել եմ Ժելեզնովոդսկի պիոներական կազմակերպության անդամ. չէ՞ որ այնտեղից մեկնել եմ ուղիղ կես դար առաջ: Երախտապարտ եմ, որ հիշել եք ինձ:

Եվ այսպես, պիոներական անցյալ... Զարմանահրաշ մի ժամանակ: Այսինքն՝ խաղեր, զվարճություններ, դպրոց, բարեկամություն, ինքնաճանաչման անդրանիկ քայլեր: Այսինքն՝ գույների, ձայների, ժպիտների, բերկրանքի ու հիասթափության բովանդակ մի տիեզերք:

Մեր ընտանիքը թուրքական յաթա-

ղանից մազապուրծ՝ հաստատվեց ձեր քաղաքում 1921 թվականին: Երկիրը լիքն էր որբերով, մոլեգնում էին սովը, համաճարակները: Բայց մենք մասնակցում էինք նոր կյանքի կառուցմանը: Մեզ տաքացնում էր հավատն ապագայի նկատմամբ, մենք լի էինք գիտելիքների ծարավով: Շուտով դպրոց գնացի և անմիջապես էլ դարձա պիոներ: Ի՜նչ հիշարժան օր էր: Մեր ջոկատը հավաքվեց «Երկրագործ» առողջարանի շենքում: Զգաստ կանգնած երեխաների շարքի առաջ ջոկատավարը կրծքիս կապեց կարմիր վզկապը, տըվեց ինձ եռալեզվյակ կրծքանշանը, ապա պատվի առավ, պատվի առա և ես, արտասանելով հանդիսավոր երդման բառերը: Ինձ թվաց, թե հոգեպես ամրացա, աճեցի, մի տեսակ փշրվեց իմ և ռուս ընկերներիս միջև եղած անտեսանելի պատնեշը: Ի՜նչ հիանալի զգացում է՝ հավասար զգալ ուրիշներին...

Մեր ջոկատային գործերը կազմակերպում էինք սեփական նախաձեռնությամբ: Ավագները չէին խառնվում: Մեր պայմաննե՜րը... Մեր ողջ հարըստությունը մի շեփոր էր, մի թմբուկ, մեկ էլ ջոկատի կարմիր դրոշը:

Մենք վաղ հասունացանք: Տասներկուսս չէր բոլորել, երբ սկսեցի թերթ վաճառել: Առավոտ կանուխ վազում էի կայարան, որ հասցնեմ գնացքին: Թերթերի մի մեծ տրցակ էի վերցնում և ոտաբոբիկ սուրում վաճառելու: Մի օր էլ զբոսայգում բախտ ունեցա հանդիպել Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայային և Վ. Ի. Լենինի քրոջը՝ Մարիա Իլյինիչնա Ուլյանովային: Կեսօր էր, նրանք նստած էին մի ստվերախիտ նստարանի վրա:

— Լրագրավաճա՛ռ տղա, մո՛տ արի...

Շրջվեցի և տեսա նրանց: Անմիջապես ճանաչեցի: Հարցուփորձ արին՝ ո՞վ եմ, ինչպե՞ս եմ հայտնվել Ժելեզնովոդսկում, ո՞ր դասարանում եմ սովորում: Հրաժեշտին Նադեժդա Կոնստանտինովնան ասաց.

— Դպրոցն ավարտելուց հետո Մոսկվա՛ արի՝ ուսումդ շարունակելու:

Հաջորդ տարի ես իսկապես Մոսկվա մեկնեցի՝ մասնակցելու պիոներների համամիութենական առաջին հավաքին: Այնտեղ կրկին ինձ վիճակվեց տեսնել Նադեժդա Կոնստանտինովնային և Մարիա Իլյինիչնային: Նրանք եկել էին հանդիպելու երկրի տարբեր ծայրերից ժամանած պատանի պատվիրակներին:

Հիանալի ուղևորություն էր: Գրեթե երկու շաբաթ մենք շրջում էինք մայրաքաղաքի տեսարժան վայրերում, անմոռաց հանդիպումներ ունենում: Այցելեցինք Վ. Ի. Լենինի դամբարանը, եղանք Կրեմլում, թանգարաններում, թատրոններում:

Վերադարձա և ջոկատին մանրամասն պատմեցի մոսկովյան իմ տպավորությունների մասին:

Մի խոսքով, սիրելի՛ երեխաներ, ինչպես ասել է Սենտ-Էկզյուպերին, «մենք բոլորս գալիս ենք մեր մանկությունից»: Իմ մանկությունն ու պատանեկությունն անցել է Ժելեզնովոդսկում և անխզելիորեն կապված է պիոներական կազմակերպության հետ... Ձեր քաղաքը, նրա հրաշալի մարդիկ, լեռները, անտառների սոսափն անբաժան են ինձանից:

*ՀՐԱՆՏ ԲԱԳՐԱՏՅԱՆ*

Ես հնամոլ չեմ և ատում եմ հնամոլությունը։ Ես ապրում եմ ժամանակի շնչով, արյան, կրակի և մոխիրների միջից հարություն առած իմ վերածընված հայրենիքով։ Հպարտանում եմ մեր ժամանակի նշանավոր մարդկանցով, այդ թվում նաև մեր նորօրյա տաղանդավոր երաժիշտներով։ Բայց ես նոր երգեր չեմ երգում։ Ինչու՞։ Նոր երգերի կատարողները շատ ու շատ են։ Այնինչ մեր հին երգերին սպառնում է կորստյան վտանգը, իսկ ինչ որ մենք կորցնում ենք, ուրիշները այն գտնում են...

Դարերի խորքից մեզ հասած, շրթից շուրթ մշակված, բյուրեղացված հայոց երգն ու պարը, բառն ու բանը մեր նախնիների տառապանքներն ու լուսաշող երազանքները մարմնավորող, հոգեկան-բարոյական կերտվածքը խորհրդանշող խոսուն վկաներն են, ժողովրդական իմաստությունների, հարուստ կենսափործի և ստեղծագործական հնարանքների թանկագին մասունքներ, որոնց հիմքում ընկած են մարդասիրության, հայրենասիրության, աշխատասիրության, ճշմարտացիության, ազնվության և իդեալական սիրո սկզբունքները, սկզբունքներ, որոնք չեն հնանում, չեն կորցնում իրենց թարմությունն ու դաստիարակչական նշանակությունը։

Ժողովուրդը ամենամեծ ստեղծագործողն է։ Նրա ավանդած երգարվեստից ու բանարվեստից լույս ու ջերմություն են հորդում, զգաստացնում, արթուն ու պայծառ են պահում մարդու միտքն ու խիղճը, օգնում են մարդուն տխրության և ուրախության պահերին, խանդավառում աշխատանքում և պայքարում, զորացնում են մարդու հոգին հայրենասիրության, անձնազոհության գերագույն ուժով, գոտեպնդում, առաջնորդում դեպի կատարյալն ու գեղեցիկը։ Պատահական չէ, որ մեր մոլորակի բոլոր հանճարեղ ստեղծագործողները սնվել են ժողովրդական ակունքներից։

Հայրենի հնավանդ երգարվեստն ու բանարվեստը նաև այն ոսկե օղակներն են, որոնք մեզ կապում են մեր ազգային մշակույթի արմատների հետ, թարմ





# ՍԻՐԵՔ, ՍՈՎՈՐ

ու կենդանի են պահում մեր նախնիների լավագույն ավանդույթները, օգնում են ժողովրդի ինքնաճանաչմանը, ազգային դեմքի պահպանմանը· գոյատևմանը: Այս պատճառով էլ հայրենի հնավանդ երգերը և բառն ու բանը գրի առնելն ու պահպանելը, ինչպես և բեմահարթակներից հնչեցնելը, նշանակում է խնամել, դալար և կենդանի պահել մեր ազգային մշակույթի արմատները: Չէ՞ որ արմատների խնամքից է կախված նաև ծառի կյանքը:

Սիրելի՛ պիոներ-դպրոցականներ, չըմոռանաք, որ հայրենի հնավանդ երգարվեստի և բանարվեստի իրավական տերն ու ժառանգը դուք եք: Ուրեմն դուք այժմվանից իսկ պետք է նաև ձեզ վրա վերցնեք մեր այդ հոգևոր հարստության խնամքն ու պահպանությունը: Թող ձեր շուրթերից ժամանակակից երգերի հետ ամենուրեք հնչեն նաև մեր հինավուրց երգերը: Ձեր մատաղ սրտերի տաքուկ անկյունում, հայոց լեզվի, Մեսրոպյան այբուբենի կողքին, թող իր պատվավոր տեղը գրավի նաև մեր ավանդական երգն ու պարը, բառն ու բանը:

Ուրախալի է, որ սկսվել է դպրոցական բանահավաքների մի իսկական շարժում, որի արդյունքը եղավ վերջերս լույս տեսած «Հրեղեն ձին» բանահյուսական ժողովածուն: Դրանով առաջին անգամ մեր իրականության մեջ հանդես եկավ մի ժողովածու, որի մեջ ամփոփված են բացառապես դպրոցական բանահավաքների գրի առած նյութերը: Գրկում, հայրաբար համբուրում եմ մեր պատանի բանահավաքներին և բոլոր այն դպրոցականներին, ովքեր կարձագանքեն «Պիոներ» ամսագրի № 8-ում տպված գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնի կոչին, խնամքով գրի կառնեն իրենց տարեց հարազատների հիշողություններում դեռ պահպանված մեր հինավուրց բանահյուսական արժեքները և դրանք կվերադարձնեն ժողովրդին: Սիրե՛ք, սովորե՛ք, և տարածե՛ք մեր ժողովրդի երգն ու պարը:

*ՀԱՅՐԻԿ ՄՈՒՐԱԴՅԱՆ*





# ...ԵՔ, ՏԱՐԱԾԵՔ

ԲԵՌՆԱՐ ԿԼԱՎԵԼ

# ԵՐԳՈՂ ԾԱՌԸ

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐԲԱՏՅԱՆԻ



Իզաբելն ու Ժերարը ապրում էին անտառին շատ մոտ, իրենց պապիկի ու տատիկի տանը: Դա գորշ պատերով, կանաչ փեղկերով շատ փոքրիկ տնակ էր, գտնվում էր գյուղից քիչ հեռու, անտառի եզրին:

Լուսամուտի առաջ կանգնած երկու երեխաները ջանում էին հայացքով ընդգրկել դաշտամիջյան ճանապարհը, որն այդ առավոտ ամբողջովին կորել էր ձյան հաստ ծածկոցի տակ:

Մինչ Իզաբելն ու Ժերարը քթները լուսամուտի ապակուն հպած նայում էին դուրս, մի թռչուն անցավ, հետո մեկ ուրիշը, հետո մի ամբողջ երամ թառեց դիմացի ծառին, ձյան կույտեր ցած թափելով:



— Այսօր ցուրտ է,— ասաց Իզաբելը:— Հարկավոր է թռչուններին կերակրել:

Իզաբելը հատիկ բերեց, իսկ Ժերարը բացեց լուսամուտը:

— Շուտ լուսամուտը փակի՛ր,— գոռաց պապիկը,— այլապես ամբողջ ձմեռը խոհանոց կխուժի:

Երեխաները ծիծաղեցին. ձմեռը ինչպե՞ս կխուժի տուն:

Իզաբելը ճատիկը շաղ տվեց արահետի վրա։ Տատիկը սկսեց ճազալ։ Դա նշանակում էր լուսամուտը պետք է փակել։

Դուռը թակեցին.

— Մտեք։

— Օ՜, Վենսանդո՛նը,— բացականչեց պապիկը։

Երեխաները նրան երբեք չէին տեսել, բայց պապիկը շատ էր պատմել իր վաղեմի ընկերոջ մասին։

Վենսանդոնը դռան առաջ կանգնած սրբում էր ակնոցը, սրբում էր նաև աչքերից ճոսող արցունքներն ու կրկնում.

— Ձմռանը, երբ դրսից տաք սենյակ եմ մտնում, աչքերս արցունքոտվում են։

Նա նստեց կրակի մոտ, պապիկի կողքը, և սկսեցին վերճիշել դեպքեր իրենց երիտասարդության տարիներից։ Խոսում էին միաժամանակ, ոչ ոք չէր լսում նրանց, սակայն, երկուսն էլ երջանիկ էին։

— Պապի՛կ, մի արծիվ է թառել չորացած ծառին։ Շտապ արի՛, պապի՛կ,— կանչեց Ժերարը։

Պապիկը տեղից չշարժվեց, իսկ Վենսանդոնը վեր կացավ և մաքուր կլոր ակնոցը քթին՝ մոտեցավ երեխաներին ու նայելով դուրս, ասաց.

— Դա ոչ թե արծիվ է, այլ՝ ագռավ, իսկ թխկին էլ չորացած չէ։

Բազկաթոռին նստած պապիկը գոռաց.

— Երկու տարի է չորացել է։ Հենց ժամանակ ունենամ, կտրելու եմ։

— Իսկ ես քեզ ասում եմ՝ ծառը չորացած չէ,— պնդում էր Վենսանդոնը,— ծառերը չեն մաճանում...

— Տարօրինակ բան ես ասում,— պատասխանեց պապիկն ապշած։

Վենսանդոնը նայում էր բոլորին, սակայն թվում էր, որ ոչ ոքի չի տեսնում։ Կարելի էր կարծել, որ նա ճեռվում, շատ ճեռվում, դաշտի ծայրին ինչ-որ մի ուրիշ բան էր տեսնում։

— Կրկնում եմ՝ ծառերը չեն մաճանում,— ասաց նա...— Եվ ասածս կապացուցեմ՝ երգեցնելով ձեր ծեր թխկուն։

Երբ ճյուրը գնաց, պապիկը նրան ուղեկցեց մինչև թխկին։ Միասին պըտտվեցին ճսկա ծառի շուրջը, նայեցին, տնտղեցին, և երբ պապիկը վերադարձավ, երեխաներն անճամբեր ճարցրին.

— Ի՞նչ ասաց, պապի՛կ, ի՞նչ ասաց։

— Վենսանդոնը պնդում է, որ թխկին չի չորացել։ Նա ինձ խոստացավ երգեցնել ծառը։

— Բայց ինչպե՞ս։

— Դա արդեն նրա գաղտնիքն է։ Առայժմ ձեզ ոչինչ ասել չեմ կարող, քանի որ ինձ ոչինչ չի բացատրել։ Մեզ ճարկավոր է սպասել։



Օրերն աննկատ անցան, եղանակը տաքացավ, ձյունը սկսեց ճալվել։ Երեխաները մի օր էլ դպրոցից վերադառնալիս նկատեցին, որ մեծ թխկին այլևս չկա։ Նրա տեղը բռնել էր մի ճաստ կոճղ, ծառակեղևի մի քանի կտոր և աղոցված փայտի թեփ։ Այս բոլորը ճիշեցնում էր ձյան փոքրիկ մի կույտ, որին կարծես մոռացել էր արևը։

— Գուցե պապիկն է կտրել թխկին,— ասաց Ժերարը,— բայց չէ՞ որ պարոն Վենսանդոնը խոստացել էր երգեցնել ծառը։

Եվ նրանք վազեցին տուն։ Պայուսակները դրին աստիճանների վրա և շունչկեցին վազել մինչև փայտե փոքրիկ տնակը, որը գտնվում էր պարտեզի խորքում։

Տնակի դուռը բաց էր, և մուտքի առաջ կար մի ձեռնասայլակ։ Տնակից դուրս եկան պապիկն ու Վենսանդոնը։

Թիկնու մի կոճղակոտոր դեռևս ձեռնա-սայլակի վրա էր:

— Երգելու է: Ես խոստացել եմ ձեզ և, իմացեք, խոստումիս տերն եմ:

— Նա վառարանի մեջ է երգելու, ճիշտ այնպես, ինչպես բոլոր մահա-ցած ծառերը,— քմծիծաղեց պապի-կը,— այդպես շատ հեշտ է ծառին եր-գեցնելը:

— Դե, լռի՛ր վերջապես,— ձայնը բարձրացրեց Վենսանդոնը,— դու ի՞նչ ես հասկանում նման բաներից: Ես քեզ ասում եմ ծառը ավելի լավ է երգելու, շատ ավելի լավ, քան այն օրերին, երբ անհամար թռչուններ էին թառում նրա ճյուղերին:

Հաջորդ օրը, երեխաները երկար ո-րոնումներից հետո վերջապես թըխ-կուն հայտնաբերեցին ցախատանը, բայց անմիջապես էլ հիասթափվեցին: Ծառը անճանաչելի էր դարձել, վեր էր ածվել բազմաթիվ մեծ տախտակների: Այս անգամ արդեն թխկին իրոք որ մահացել էր:

— Պարոն Վենսանդոնը ծաղրեց մեզ,— ասաց Իզաբելը,— նա երբեք չի կարողանա երգեցնել ծառին: Ո՞վ է տեսել մահացած ծառը երգի:

Սակայն եկավ գարունը, իր հետ բե-րելով երգ ու ուրախություն, խինդ ու ծիծաղ:

Հուլիսյան մի օր պապիկը ձեռնա-սայլակը բակ հանեց և ցախատնից դուրս բերեց թխկու մեծ տախտակները:

— Հիմա,— ասաց նա,— ճանա-պարհվում ենք դեպի Վենսանդոնի ար-հեստանոցը:

Իզաբելը բարձրացավ ձեռնասայլա-կին, պապիկը սկսեց քաշել, իսկ Ժե-րարը հրում էր ետևից:

Վենսանդոնն ապրում էր գյուղի ծայ-րամասում: Նա դուրս եկավ, ձեռքերով մի ծիծաղելի շարժում արեց ու բացա-կանչեց.

— Օ՜, այս ովքե՞ր են գալիս: Ինչպի-սի՜ լուրջ հաճախորդներ: Ես ձեզ վա-ղուց էի սպասում:

Նա բաց գույնի վերնաշապիկ էր հա-գել, իսկ կապույտ քաթանից կարած գոգնոցը ծածկում էր ոտքերը:

Պապիկն ու Վենսանդոնը տախտակ-ները տեղափոխեցին կիսամութ, եր-կար մի սենյակ: Երեխաները չհամար-ձակվեցին հետևել նրանց: Ինչ-որ տա-րօրինակ հոտ էր փչում այնտեղից: Երեխաները իրար ձեռք բռնած անշարժ կանգնել էին:

— Փայտը,— ասում էր Վենսանդո-նը,— ազնիվ նյութ է: Նա կենդանի է, միշտ կենդանի: Մետաղը պիտանի է այնքանով, որ նրանից պատրաստում են փայտամշակման գործիքներ: Իսկ փա՜յտը... փա՜յտը...

Այս բառերն արտասանելիս կայծկըլ-տացին նրա աչքերը: Վենսանդոնը տարբերվում էր սովորական մարդկան-ցից՝ նա փայտի սիրահար էր: Փայտի մասին այնպես էր խոսում, կարծես խոսքը կենդանի էակի վերաբերեր, կարծես փայտը իր ընտանիքի անդա-մը լիներ, որի հետ երկար տարիներ ապրել էր: Նա կարող էր փայտից ա-մեն ինչ պատրաստել: Նրա արհես-տանոցի պատերի դարակներում խնամ-քով շարված էին գործիքները:

Իզաբելը ուղղվեց դեպի փոքր դուռը և պատրաստվում էր ձեռքը մեկնել բռնակին, Վենսանդոնը վրա հասավ:

— Ո՛չ, ո՛չ, այդտեղ մտնել չի կա-րելի,— ասաց նա:— Այդ սենյակում է գտնվում իմ գաղտնիքը:

Ամառային արձակուրդները, արշավ-ները դաշտում ու անտառում շատ շուտ անցան: Աշնանը երեխաներն այնքան էին ծանրաբեռնված դասերով, որ մոռացան և՛ մեծ թխկին, և՛ Վեն-սանդոնի խոստումը:



Մի ճինգշաբթի առավոտ, նոր տարուց մի քանի օր առաջ, երեխաները հենց որ արթնացան, անմիջապես գլխի ընկան, որ ձյուն է եկել: Տան շուրջը տիրում էր խոր լռություն, իսկ օրը սովորականից ավելի պարզ էր: Ձնայած բավականին ցուրտ էր, նրանք անմիջապես դուրս եկան անկողնուց:

— Թռչունները,— ասաց Իզաբելը,— հարկավոր է մտածել թռչունների մասին:

Նա պատրաստվում էր բացել լուսամուտը հատիկ շաղ տալու համար, երբ լրիվ սպիտակած արահետի վրա նկատեց մի մարդու:

— Վենսանդո՞նը,— ուրախ բացականչեց նա,— պարոն Վենսանդոնն է գալի՜ս...



Իսկապես որ նա էր՝ մոխրագույն մուշտակով ու ականջավոր գլխարկով: Թևատակին բերում էր դարչնագույն թղթով ծրարած մի երկար փաթեթ:

Ծերունին քայլում էր դանդաղ ու ըզգույշ:

— Նա է, նա է,— կրկնում էին երեխաները:

Նրանք անշուշտ չգիտեին, թե ինչ կար Վենսանդոնի փաթեթում, բայց սրտները սկսեցին ուժեղ բաբախել: Ժերարը վազեց դուռը բացելու: Տատիկն ու պապիկը, Իզաբելն ու Ժերարը նայում էին Վենսանդոնին և նրա ամուր կապած փաթեթին: Վենսանդոնը այն դրեց սեղանին, հանեց ակնոցը, երկար սրբեց, թաշկինակով մաքրեց քիթը, նորից դրեց ակնոցը և իր մեծ ձեռքերը շփելով մոտեցավ վառարանին:

— Այստեղ ավելի լավ է, քան դըրսում,— ասաց նա:

Երեխաների անհամբերությանը չափ ու սահման չկա: Յուրաքանչյուրը սեղանի մի կողմից նայում էր փաթեթին, բայց չէր համարձակվում ձեռք տալ:



Իսկ ծերունին կարծես մեծ բավականություն էր ստանում պահելով նրանց սպասողական վիճակում: Նա աչքի ծայրով նայում էր երեխաներին, ժըպտում տատիկին ու պապիկին: Վերջապես ընդհատեց լռությունը:

— Ինչու՞ չեք բացում փաթեթը: Հո ե՞ս չեմ բացելու:

— Տատի՛կ, որտե՞ղ է մկրատը,— միաժամանակ հարցրեցին երեխաները:

— Ո՛չ,— ասաց Վենսանդոնը:— Կյանքում հարկավոր է համբերատար և խնայող լինել: Քանդեցեք հանգույցները և ոչինչ մի՛ փչացրեք: Իմ թելն ու թուղթը ինձ հարկավոր են, ես դրանք ետ եմ տանելու:

Անհրաժեշտ եղավ մի փոքր էլ համբերել, ցավեցնել եղունգները: Վենսանդոնը ծիծաղում էր: Տատիկն ու պապիկը, որոնք իրենց թոռների չափ անհամբեր և հետաքրքրասեր էին դարձել, սպասում էին՝ յուրաքանչյուրը աչքի տակով հետևելով մյուսի շարժումներին: Վերջապես թուղթը հանեցին և կարմիր գույնի փայտից, փայլուն, երկար մի տուփ երևաց, որի մի ծայրը մյուսից ավելի լայն էր: Վենսանդոնը երկյուղածորեն բացեց այն:

Տուփի մեջ, կանաչ թավշից պատրաստած մահճակալում մի ջութակ էր ննջում:

— Ահավասիկ,— համեստորեն ասաց ծերունին:— Լարերն ու թավիշը չհաշված, ամեն ինչ գտնվում էր ձեր ծառի սրտում:

— Ի՛նչ գեղեցիկ է:

— Ես գիտեի, որ դու ճարպիկ, հնարամիտ ես, բայց այնուամենայնիվ...— շշնջաց պապիկը:

Մեր արհեստավորը ժպտում էր:

— Դուք հիմա հասկացա՞ք, թե ինչու ձեզ թույլ չտվեցի մտնել իմ չորանոցը: Այնտեղ կտեսնեիք ջութակներ, կիթառներ, մանդոլիններ և շատ ուրիշ գործիքներ, և ամեն ինչ կկռահեիք: Դե, ուրեմն, իմացե՛ք: Ես ջութակագործ վարպետ եմ, ջութակներ եմ պատրաստում: Իսկ թխկու փայտը ամենաքաղցրահնչյուն երգող փայտն է:

Նա դանդաղորեն մեկնեց իր մեծ ձեռքը, շոյեց, փայփայեց գործիքը, իսկ երբ ձեռքը ետ քաշեց, այն դողում էր:

— Ու՞մ ես սպասում,— ասաց նա՝ դիմելով Ժերարին:— Մի՞թե դու չես ուզում երգեցնել քո ծառը: Փորձի՛ր նվագել: Վերցրու՛ ջութակը, համոզվա՛ծ եղիր՝ նա քեզ չի կծի:

Տղան ջութակը հանեց տուփից, բարձրացրեց, ինչպես այդ անում են երաժիշտները, և աղեղը սահեցրեց լարերի վրայով... Տատիկն անմիջապես փակեց ականջները, իսկ կատուն մտավ պահարանի տակ: Բոլորը սկսեցին ծիծաղել:

— Մի՞թե սա երգել է կոչվում,— ասաց պապիկը:

— Հարկավոր է, որ տղան նվագել սովորի,— պատասխանեց Վենսանդոնը,— ու վերցնելով գործիքը, տեղավորեց իր կզակի տակ:

Եվ, մեծ ձեռքերով, ծեր ջութակագործը սկսեց նվագել: Նա նվագում և միաժամանակ քայլում էր սենյակում, լուսամուտի ուղղությամբ: Երեխաները հմայված լսում էին նրան:

Դա շատ հուզիչ մեղեդի էր, որ կարծես պատմում էր դարերի խորքից եկած հին լեգենդների մասին: Մի մեղեդի էր, նման հեռու-հեռվից եկող թեթև քամու կամ հեքիաթային թըռչունների թևաբախումների շշյունքին:

Վենսանդոնը նվագում էր, և ինկապես որ հին ծառը վերակենդանացել ու երգում էր նրա ձեռքին:

*Ֆրանս. թարգմանեց՝*
*ՍԱՐԳԻՍ ՋԻՐՋԻՐՅԱՆԸ*



# ԿԱՐՄԻՐ ԶԱՆԳԱԿՆԵՐ

Ես ձեզ եմ փնտրում,
Դաշտի կարմի՛ր զանգակներ,
Ձորի միջին, սարի լանջին,
Ես ձեզ եմ փնտրում,
Դաշտի կարմի՛ր զանգակներ:

Բացվե՛ք իմ ճամփին,
Արևի նման անմահ կրակով,
Ու բոցավառե՛ք իմ սիրտը տխուր
Ես ձեզ եմ փնտրում,
Առվակների մոտ, դաշտերում մոտիկ:

Ղողանջե՛ք, զանգակնե՛ր ուրախ,
Իմ սիրտը լցրեք խնդությա՛մբ պայծառ,
Ա՜խ, ե՞րբ կտեսնեմ ձեզ դաշտերում կանաչ,
Զանգակնե՛ր կարմիր, զանգակնե՛ր զնգուն,
Դաշտի կարմի՛ր զանգակներ:

*ԱՆՆԱ ՄԱՐԳԱՐՅԱՆ*
*Մասիսի շրջան, Մարմարաշեն*
*գյուղի դպրոց*

*Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ*




**ՀԱՅ** ժողովուրդը գրի ու գրչության ժողովուրդ է: Բոլոր դարերում նա գրել է, ստեղծել և մաքառել է իր գրած ձեռագիր մատյանները փրկելու, սերունդներին հասցնելու համար: Դուք եթե եղել եք Մատենադարանում, լսած կլինեք թե ինչ հետաքրքիր կենսագրություններ ունեն ձեռագիր մատյաններից յուրաքանչյուրը:

Սակայն Մատենադարանը մեր ժողովրդի կենսագրությունը իր մեջ ամփոփող միակ օջախը չէ:

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո, 1923 թ. սեպտեմբերի 26-ին ՀՍԽՀ Կենտգործկոմի նախագահությունը որոշեց Կենտգործկոմին առընթեր հիմնել պետական կենտրոնական արխիվ, հավաքելով ու պահպանելով աչնտեղ մեր ժողովրդի նորագույն շրջանի պատմությունը վերաբերող բոլոր փաստաթղթերը: Այդ գործին այնքան մեծ կարևորություն տրվեց, որ դրանով զբաղվեցին այնպիսի նշանավոր գործիչներ, ինչպիսիք էին նկարիչ Մարտիրոս Սարյանը, ճարտարապետ ակադեմիկոս Ալեքսանդր Թամանյանը, մեծ ճարտարագետ Թորոս Թորոմանյանը, Աշխարհբեկ Լոռու-Մելիք Քալանթարը, Ալ. Մյասնիկյանը և ուրիշներ:

1921 թ. մայիսին լուսավորության ժողկոմ Աշոտ Հովհաննիսյանը դիմեց ՀՍՍՀ-ում Վրացական հանրապետության ներկայացուցչությանը, խնդրելով. «Միջոցներ ձեռք առնել կորստից փրկելու, ապահովելու կամ ձեռք բերելու հանրապետության հնադարանների համար ձեր երկրամասի սահմաններում գտնվող հայ հնության հիշատակարանները ու արխիվները: Մասնավորապես խնդրում եմ, միջոցներ ձեռք առնել ստանալու Գյուտ քահանա Աղանյանցի մոտ գտնվող այն ձեռագրերն ու թղթերը, որոնք հարուստ աղբյուր են ծառայում հայոց պատմության նոր շրջանի համար»:

1922 թ. ապրիլի 5-ին Մոսկվայի հայոց համայնքի ներկայացուցիչները Ամենայն Հայոց կաթողիկոսին ուղարկած զեկուցագրում հաղորդեցին. «Մոսկվայի հայ գաղութը սրբությամբ կատարեց յուր վրա դրված նվիրական պարտականությունը և ս.Էջմիածնից 1915 թ. Մոսկվա բերված գույքը մանրամասն, անվնաս, անթերի և նույնությամբ, որպես նախնյաց սուրբ ավանդ, հանձնեց Հայաստանի կառավարությանը վերջինիս որոշման և պահանջի համաձայն»:

Եվ այսպես շարունակ...

Այսօրինակ գրությունների շղթան անվերջ է: Կարելի է հիշատակել Ալ. Մյասնիկյանին, որը մեծ դժվարությամբ Երևան տեղափոխեց Վահան Տերյանի անձնական արխիվը, Երվանդ Շահազիզի և Մարտիրոս Սարյանի միջոցով Դոնի Նախիջևանից ստացվեցին մեծ քանակությամբ թանգարանային իրեր՝ Ռ. Պատկանյանի և Միք. Նալբանդյանի ձեռագրերը, անձնական իրերը:

Տասնամյակներ են անցել, այդ դժվար տարիները մնացել են մագաղաթի գույն ստացած վավերագրերում, բայց հայ ժողովուրդը չպիտի մոռանա նրանց, ովքեր դրեցին հայոց կենսագրատան, ՀՍՍՀ պետական կենտրոնական արխիվի հիմնաքարերը:

Հետագայում մեծացավ արխիվային հիմնարկների ցանցը, Մոսկվայից, Լենինգրադից, Միության բոլոր հանրապետություններից Երևան տեղափոխվեցին մեր պատմության մասունքները: Եվ եթե 1932 թ. գոյություն ուներ մեկ

պետական կենտրոնական արխիվ՝ 11 աշխատողով, ապա այժմ գործում են վեց պետական կենտրոնական արխիվներ՝ 300-ից ավելի գիտական աշխատողներով: Այդ արխիվները միավորված են մեկ հաստատության մեջ, որը կոչվում է՝ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր գլխավոր արխիվային վարչություն:





ՀՍՍՀ պետական արխիվի մեծ ու լուսավոր արխիվադարաններում, ջերմության ու խոնավության բացարձակ կայուն պայմաններում այժմ պահպանվում են 16-րդ դարից սկսած մեր գիտության ու կուլտուրայի տարբեր բնագավառներին վերաբերող հազարավոր փաստաթղթեր, այդ թվում զորավար Անդրանիկի, Կարա-Մուրզայի, Գ. Սունդուկյանի· Սմբատ Շահազիզի, Միք. Նալբանդյանի, Ղ. Աղայանի, Պ. Պռոշյանի և այլոց նամակներն ու գրությունները:

Ետհոկտեմբերյան ժամանակաշրջանին վերաբերող արխիվում կենտրոնացված է պետական բարձրագույն մարմինների գործունեությանը վերաբերող փաստաթղթերը, ինչպես նաև Գայի, Կամոյի, Մյասնիկյանի, Հովհ. Բաղրամյանի և այլոց անձնական արխիվները:

Մեր ժամոյի արխիվը միակն է աշխարհում, որն ստանում և պահպանում է երկրագնդի տարբեր անկյուններում ապրողների բոլոր հայատառ հանդեսները, ինչպես նաև հանրապետության խմբագրությունների արխիվները:

Ընդամենը մի քանի տարի է, ինչ գործում է կինո-ֆոտո-ֆոնո արխիվը, որն ունի տեխնիկայի վերջին միջոցներով հագեցած կինոցուցադրման, ֆոտոպատճենահանման, կրկնօրինակման լաբորատորիաներ: Ձայնագրության բաժինը ունի հատուկ դահլիճ, որտեղ կատարվում են նպատակային ձայնագրություններ:

Մեր պատմության փաստաթղթային արժեքների հավաքագրումը չընդհատվող մի գործ է, որին կարող է իր մասնակցությունը բերել նաև ամեն մի պիոներ և դպրոցական:

Եթե ձեր դպրոցական թանգարաններում կան մեր պատմությանը վերաբերող մեկ թերթ, անհետանալու վըտանգի ենթակա մի փաստաթուղթ, կարևոր մի վավերագիր, շտապեք տեղեկացնել այդ մասին Հայաստանի արխիվային վարչությանը հետևյալ հասցեով՝ Երևան 33, Հր. Քոչարի № 51: Դրանով մեծապես օգտակար կլինեք մեր երկրին ու մեր ժողովրդին: Այդ վավերագրերը մեր ժողովրդի անցյալն են ներկայացնում, մեր փոքրաթիվ ազգի մեծ կենսագրությունը:

*ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ*
*ՀՍՍՀ պետական արխիվի գրականության և արվեստի բաժնի վարիչ*

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# ՆԱՄԱԿԸ



Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մայրս պատմում էր, որ հայրս ինձ շատ էր սիրում: Աշխատանքից վերադառնում էր, լվացվում, ինձ առնում գիրկը: Իսկ ես արդեն մեկ տարեկան էի: Նա այնքան լայն շապիկ էր հագնում, որ ես մտնում էի մեջը, գլորվում հորըս կրծքի վրա: Նա ինձ համբուրում էր, համբուրում, և ես քնում էի:

Գյուղի առաջին մեխանիզատորներից էր, տրակտոր էր քշում և կալսիչ աշխատեցնում: Նրանից միշտ կամ հողի հոտ էր գալիս, կամ նոր հնձված խոտի, կամ ցորենի հասկի:

Տուն էր կառուցում: Ավազով ու քարով: Դուռը չհասցրեց դնել: Պատերազմն սկսվեց...

Ես երկու տարեկան էի: Մայրս, Եսայի հորեղբորս աղջկա հետ, գնաց Երևան: Հայրս վիրավորվել էր. Ուկրաինայից հասցրել էին այստեղ: Երբ մայրս վերադարձավ, ամառվա խաղաղ ու տաք երեկո էր: Ես գրկած մեր տան սյունը, օրեցօր մեծացող լուսնյակին էի նայում: Հիմա ո՞ւր են այն լուսնյակները: Ո՞ւր են այն աստղերը, որոնք տաք-տաք թափվում էին մեր տանիքի վրա: Ո՞ւր է այն երկինքը... Այն ժամանակ, երբ մեկը երշիկ էր բերում քաղաքից, գյուղով մեկ տարածվում էր հոտը, երբ մեկը հաց էր թխում, բոլորն առնում էին հոտը: Փեթակներից մեղրի բույր էր գալիս... Ի՞նչ եղավ...

Հեռվից առա մորս պայուսակի բլիթների հոտը:

— Հայրդ է ուղարկել,— գրկեց ինձ, կրծքին սեղմեց մայրս:

Համով, բուրումնավոր բլիթներ էին։ Այդպես էլ հայրս մնաց հիշողությանս մեջ, որպես հողի ու նոր թխված հացի հոտ։

Ես հազար անգամ մտովի տեսա, թե ինչպես և որտեղ զոհվեց նա։ Աշուն էր, ջուրը սառը, քամիները սառը, երկինքը մթնած։ Գետանցման ժամանակ հազարավոր մարդիկ զոհվեցին։ Հայրս անցավ։ Անցնելը մեծագույն երջանկություն էր։ Անցնելը կյանքի հույս էր։ Ափին ընկերը վիրավորվեց։ Հարկավոր էր հասնել, թաքնվել մի քանի քայլ այն կողմ գտնվող փոսի մեջ։ Սակայն ընկերը վիրավորվեց։ Ընկերոջ ձայնը կանչում էր։ Վազեց, գրկեց, որ տանի, պայթեց արկը...

Ես այդ ամենը տեսա... Դնեպրի ափին էր։ Տատս ամեն օր աղաչում էր աստծուն, նույնիսկ կաշառք էր խոստանում, թեև աքլոր անգամ չկար, որ տաներ Սուրբ Սարգսին մատաղ, տատըս աստծուն խոստանում էր յոթ ցուլ մատաղ անել, յոթ աքլոր միաժամանակ։ Միայն թե պաշտպաներ հորս։ Սակայն Սուրբ Սարգիսն ինչ էլ աներ, հայրս չկարողացավ չլսելու տալ վիրավորված ընկերոջ կանչն ու վազել, թաքնվել փոսի մեջ։

Աշուն էր... Ջուրը սառը, քամիները սառը, երկինքը սևակնած... Երկնքով կռունկներ էին անցնում՝ չվում էին տաք երկրներ։

— Տաք գուլպաներ ու ձեռնոցներ գործեմ, ուղարկեմ հորդ ու հորեղբորըդ,— ասաց տատս,— ասում են, այն կողմերը շատ ցուրտ է լինում։

Երեկոյան մայրս վերադարձավ աշխատանքից։ Տխուր էր, դեմքին ժպիտ չկար։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց տատս։

— Չգիտեմ... Սիրտս մի տեսակ է...

Նրանք երկուսն էլ զգացին հորս մահը, ներսում, հոգով։ Բայց չհավատացին։

Մեծացա, գնացի, լուսանկարեցի հորս տապանաքարն ու բերի ցույց տվեցի, էլի չհավատացին...

Երբ սկսեցի գրել-կարդալ, մորս հարցրի.

— Հայրիկը նամակ չէ՞ր գրում։

Մայրս գնաց, խառնեց իր գզրոցները, խառնեց տատիս գզրոցները և տխրեց։ Վերջապես տատիս հազարափեշ գոգնոցի հազարմեկերորդ գրպանից մի նամակ գտան։ Նամակը փաթաթված էր թղթի մեջ, թուղթը՝ ուրիշ, ավելի ամուր թղթի մեջ, ավելի ամուր թուղթը՝ գույնզգույն լաթի կտորի մեջ, լաթի կտորը՝ թաշկինակի։ Եվ այս ամենը փաթաթված, ամուր կապված էր թելով։

— Հանկարծ չկորցնես,— ասաց տատս։

Ուշադրությամբ զննեցի նամակը, շուռ ու մուռ տվեցի, աշխատեցի կարդալ, բայց այնքան էր մաշվել, որ ոչինչ չէր երևում։

— Տո՛ւր ինձ,— ասաց տատս անհանգստանալով,— հանկարծ կկորցնես։

— Ոչինչ չի երևում,— ասացի, տըխուր նայելով ծալերից կտրտված թղթի կտորտանքներին,— միևնույնն է, չի կարդացվի։

— Ես կկարդամ,— ասաց տատս,— և վերցնելով ձեռքիցս ու ամուր փաթաթելով, սկսեց կարդալ։

***

Երեք օր էր պառկած էին խրամատում։ Անընդհատ կրակում էին։ Չէին կարողանում գլուխները բարձրացնել։ Սառած ճահճի ջուրը մարմինների տաքությունից հալվել, թրջում էր հա-

գուստները· ծծվում, հասնում մարմնին: Սարսռալով շրջվում էին մյուս կողքի, սողեսող տեղափոխվում, բայց հնարավոր չէր գլուխը բարձրացնել: Երեք օր էր, բերանները բաց չէին դրել: Երրորդ օրվա կեսօրին, հանկարծ բարձր, շատ բարձր կատվի մլավոց լըսվեց: Բոլորը լարեցին լսողությունները: Դադարեցին կրակել: Կատուն սրտաճաք մլավոցով թափառում էր եղեգնուտում: Որտեղի՞ց էր հայտնվել, ոչ ոք չէր հասկանում: Հետո հիշեց, մոտակայքում ավերված գյուղ կար: Ամեն ինչ հրդեհված էր, կենդանի շունչ չըկար: Կատվի մլավոցը գնալով ավելի էր մոտենում և ուժգնանում: Գերմանացիները նույնպես դադարեցրին կրակելը: Լռություն տիրեց: Բոլորն ականջ էին դնում: Սրտակեղեք մլավոցը թափառում էր եղեգնուտում:

Ձայնն աջ կողմից էր լսվում: Գնալով մոտենում էր: Լռությունից խաբվելով բարձրացավ արմունկներին, ցանկացավ նայել: Ծարծատեց գնդացիրը: Անմիջապես պառկեց: Նորից լռեցին: Սողեսող առաջ շարժվեց: Եղեգների արանքից երևաց կատվի դնչիկը: Մայր կատու էր, բերանով բռնած բերում էր միակ ձագին: Մոտեցան միմյանց: Ընտանի էր, սակայն պատերազմից վայրենացած՝ նայում էր սարսափահար աչքերով: Զգուշորեն մեկնեց ձեռքը, շոյեց, փաղաքշող խոսքեր ասաց: Կատուն նրա առաջ դրեց ձագին ու տխուր մլավելով նայեց աչքերի մեջ: Քաղցած էր: Պատերազմն ամեն ինչ ոչնչացրել էր: Միակ կենդանի արարածն էր ձագի հետ, պատահաբար ողջ էին մնացել:

Բացեց շինելի փեշը, կատվին ձագի հետ ներս առավ, մոտեցրեց մարմնին, տաքացրեց, ապա բնազդորեն խառնեց գրպանները, բայց ոչինչ չգտավ:

— Տղե՛րք,— կանչեց,— ոչինչ չկա՞ ուտելու... Սոված են...

Լռություն տիրեց: Հետո մի քանիսը քրքջացին:

— Արի այստե՛ղ,— կանչեց մեկը,— բե՛ր, մի տուփ պահածո է մնացել:

Ոչ ոք չէր կրակում: Կատուն դուրս գալով շինելի տակից, մլավեց:

— Այստեղ ենք, դեպի ա՜ջ արի,— նորից կանչեց ձայնը:

Եղեգնուտում պառկած, մարդիկ շուռ էին գալիս մի կողքից մյուսին, որպեսզի հալվող ջուրը չներծծվի հագուստից ներս ու ժպտալով ունկնդրում էին քաղցից ու մարդկանց կարոտից վայրենացած կատվի մլավոցին, որն անընդհատ մոտենում էր մի տուփ պահածո ունեցող զինվորին:

— Մի տես ո՞նց է ուտում,— քրքըջաց մի տուփ պահածո ունեցող զինվորը:

— Տեսե՛ք, տեսե՜ք,— ասաց մի ուրիշը և նույնպես քրքջաց:

Ծուտով եղեգնուտով մեկ քրքիջ տարածվեց: Ոչ ոք չէր կրակում...

Նայում էր ագահորեն չփչփացնող կատվին: Սիրտն ուրախությունից ու հեռավոր կարոտից նվում էր քաղցած մայր կատվի նման: Հիշում էր իրենց բակը, ամռան արևից քաղցրացած, կաթ-կաթ ընկնող թթերը, պոչի հետ խաղացող կատվին...

Ոչ ոք ստույգ չէր կարող ասել, թե ինչ էր գրված հորս նամակում, որովհետև ամեն ինչ վաղուց ջնջվել ու անընթեռնելի էր դարձել տատիս հազարփեշանի գոգնոցի հազարմեկերորդ գրպանում, սակայն նա այնպես վարժ ու վստահ էր կարդում, որ կասկածելը մեղք կլիներ... Գուցե և իր հնարած հեքիաթի նման մի հեքիաթ էլ սա էր:



# ԳՅՈՒՂԸ, ՈՐՏԵՂ ԵՍ ԵՄ ԱՊՐՈՒՄ

Սարը, որի վրա նստում եմ, թամբի է նման: Այդտեղից, ինչպես ափիդ մեջ երևում է գյուղը, որի պատմությունը նույնքան հին է, որքան Մեծ Վարդանի հիշատակին կառուցված Նահատակ կիսաքանդ եկեղեցին, Ծելփուրխանի ավերակները, որոնց կանգուն մնացած պատերի վրա գարնանը մարդաբոյ եղինջ է աճում, իսկ ամռան և աշնան գիշերներին անվրդով երգում են ծղրիդները:

Գյուղը հարթության վրա չէ: Թեք լեռնալանջին տարածվում են հին ու նոր թաղամասերը՝ հողե և քարե տներով, փշի և փայտի ցանկապատերով: Հարթության վրա այգիներն են՝ հին ու նոր: Նրանց կենսագրությունը ընդամենը երկու տասնամյակի պատմություն ունի: Նախկին ճոճկանցիների մի հատիկ այգին ձորում է եղել, այժմ էլ պահպանվում են այգու ցանկապատերը: Ջրից քարափի ծերպերն են լիզում հատուկենտ ընկուզենիները, որոնց արմատները ջուր են խմում ոչ ջրառատ մի առվակից: Հնից մնացածները դրանք են և մի քանի խարխուլ խրճիթներ, որոնք թանգարանային ցուցանմուշի տեսք ունեն: Հեռվից երևում է գյուղ մտնող ասֆալտապատ ճանապարհը, հին ճամփան հատում է նրան քարափի եզրին: Այն այլևս բանուկ չէ: Եթե հրաշքով կենդանանային հին ճոճկանցիները, կկարծեին, թե մի անծանոթ քաղաք են ընկել: Ինչպես չկարծեն, երբ նախկին աղքատիկ գյուղը անհետացել է, փոխարենը շուրջբոլորը տուֆից ու բազալտից բնակելի տներ են՝ շրջափակված մեծ այգիներով: Լայն ու ասֆալտապատ փողոցները երիզված են ցերեկային յույսերով: Մեկ աղբյուրի տեղ՝ մի քանիսն են հիմա: Բակերում ջուր, մաքրություն: Հանրախանութ, մանկապարտեզներ, եռահարկ դպրոց, անթիվ ավտոմեքենաներ: Արցունքի պես ջինջ արհեստական մի լիճ, որի սառը ջրերում բազմանում են ձկներ: Գյուղի հարավային մասում կուլտուրայի տան կիսակառույցն է, կողքին՝ փոստի անավարտ շենքը: Մի քանի ամիս հետո ճոճկանցիների բնակարաններում կզրնգա հեռախոսը, տնտեսուհիները կօգտվեն բնական գազից:

Իսկ ջերմոցնե՞րը, ֆերմանե՞րը, հեքիաթային այգինե՞րը, որոնց բերքը ճոճկանցիները այսօր միայնակ հավաքել չեն կարողանում: Նախկին Ճոճկանը, որ աշխարհից կտրված ապրում էր ինքն իր մեջ, այսօր բազմաթիվ թելերով կապված է շրջանի, հանրապետության և Միության տարբեր վայրերի հետ: Ճոճկանը հիմա շրջանի առաջավոր տնտեսություններից է: Ճոճկանցիների վաստակը մեծ է: Մեծ է և պարգևը՝ Համամիութենական մրցության դրոշը: Մեծ է և սպասելիքը: Մեծ են երազանքները, որոնք անպայման կիրականանան:

*ՎԱՐՍԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ*

*Թումանյանի շրջ. Ճոճկանի միջն. դպրոցի 8-րդ դաս. աշակերտուհի*

# ԲԺԻՇԿ ԲԵԼԼԸ՝ ՇԵՐԼՈԿ ՀՈԼՄՍԻ ՆԱԽՕՐԻՆԱԿ



Մի անգամ Էդինբուրգի համալսարանի լսարաններից մեկը, որտեղ պարապում էին ուսանող-բժիշկները, մի հիվանդ մտավ: Նկատելով նրան դասախոսն ասաց.

— Ջենտլմենե՛ր, ձեր առջև կանգնած է մի մարդ, որը ժամանակին ծառայել է շոտլանդական բանակում և ամենայն հավանականությամբ եղել է նվագախմբի երաժիշտներից և պարկապզուկ է նվագել:

Սկզբում նորեկը վճռականորեն ժխտում էր, թե ինքը որևէ կապ է ունեցել զինվորական ծառայության հետ: Բայց երբ բուժզննման ժամանակ նրա ուսին երևաց «Դ» տառի խարանվածքը (Ղրիմի պատերազմի շրջանում այդպես խարանում էին դասալիքներին), նա խոստովանեց, որ իսկապես ծառայել է շոտլանդական հրաձիգների գնդում և նվագախմբում պարկապզուկ է նվագել:

Սաստիկ զարմացած ուսանողները հարցրին դասախոսին, թե նա ինչպես իմացավ այդ ամենը:

— Ամեն ինչ շատ պարզ է,— պատասխանեց դասախոսը:— Հարկավոր է միայն ուշադիր լինել... Այս հիվանդը քայլարկել է ուղղաձիգ ու համաչափ, իսկ այդպես քայլում են զինվորական նվագախմբում պարկապզուկ նըվագողները: Նրա ոչ բարձր հասակը հաստատում է, որ նա իրոք ծառայել է բանակում, այն էլ միայն երաժշտական դասակում:

Ուսանողներից մեկը հարցրեց.

— Բժի՛շկ Բելլ, դուք կարող էիք Շերլոկ Հոլմս դառնալ:

— Ես հենց Շերլոկ Հոլմսն եմ...

Ջոզեֆ Բելլը, որ նշանավոր խուզարկու Շերլոկ Հոլմսի նախատիպն է, մի բան, որի մասին գրում է նաև Արթուր Կոնան Դոյլն իր ինքնակենսագրության մեջ, եղել է ժամանակի ականավոր վիրաբույժը: Նա դասավանդում էր Էդինբուրգում, և նրա դասախոսությունները հիսուն տարի շարունակ անփոփոխ կերպով հմայել են ուսանողներին, որոնցից մեկն էլ եղել է Կոնան Դոյլը:

Բժիշկ Բելլը իր դասախոսությունների ժամանակ միշտ ընդգծում էր փոքր, աննկատելի տարբերությունների կարևորությունն ու մանրուքների անսպառ նշանակությունը և գտնում էր, որ ամեն մի մասնագիտություն իր կնիքն է թողնում մարդու վրա:

Մի անգամ Ջոզեֆ Բելլը բուժարանում հիվանդին երկար զննելուց հետո ասաց.

— Այսպես-ս, ուրեմն... դուք ծառայել եք բանակում, շոտլանդական հրաձիգների գնդում, բայց վերջերս զորացրվել եք...

— Այո՛, սը՛ր:

— Դուք սերժանտ եք եղել, ձեր ծառայությունն անցել է Բարբադոսում:

— Այո՛, սը՛ր:

Բժիշկ Բելլը դիմեց ուսանողներին.

— Ուշադրությո՛ւն դարձրեք, ջենտլմեննե՛ր: Այս մարդը քաղաքավարի է, դաստիարակված, բայց չհանեց գլխարկը: Ինչու՞: Մի՞թե պարզ չէ. բանակում ընդունված չէ ներս մտնելիս հանել գլխարկը, իսկ զորացրվել է վերջերս և դեռ չի ընտելացել նոր վարվելակերպի պահանջներին: Նշանակում է սերժանտ է եղել, ոչ պակաս: Ինչ վերաբերում է Բարբադոսին, ապա նրա գանգատները «փղային հիվանդությունից» ապացուցում են, որ նա ծառայել է Արևմտյան Հնդկաստանում:

Շերլոկ Հոլմսին ստեղծողը հետագայում այս դեպքը գրեթե ամբողջությամբ վերարտադրել է «Դիպված թարգմանչի հետ» պատմվածքում:

Արթուր Կոնան Դոյլն ավարտել է Էդինբուրգի համալսարանը 1881 թվականին բժշկի դիպլոմով: Բայց բժշկի մասնագիտությունը նրան ոչ ապահովություն տվեց, ո՛չ հաջողություն: Հուսահատված մշտական կարիքից ու փողի պակասությունից, սկսեց... գրել:

— Ես մտածում էի իմ ծեր ուսուցչի՝ բժիշկ Ջո Բելլի մասին,— հետագայում պատմում է Կոնան Դոյլն իր ինքնակենսագրության մեջ:— Եթե Բելլը խուզարկու լիներ, ապա անպայման այդ գրավիչ, անկազմակերպ զբաղմունքը կվերածեր ճշգրիտ գիտությանը մոտ ինչ-որ բանի: Հեշտ է այս կամ այն մարդու մասին ասել, թե շատ խելացի է, ընթերցողն ուզում է տեսնել ասվածի կենդանի օրինակը, այնպիսի օրինակներ, ինչպիսիք Բելլը ամեն օր նկարագրում էր մեզ համար: Այս գաղափարը գրավեց ինձ...

Գրողը նրան կոչեց Շերլոկ Հոլմս՝ ի պատիվ իր մտերիմ ընկերոջ, ամերիկացի ժուռնալիստ Օլիվեր Վենդել Հոլմսի:









## ԲԱՌԱՇՂԹԱ

1. Պետության խորհրդանիշ: 2. Ռուս մեծ բանաստեղծ: 3. Թերակղզի՝ ՍՍՀՄ-ում: 4.5.6. Սովետական հանրապետությունների մայրաքաղաքներ: 7. Քաղաք՝ Տաջիկստանում, որտեղ գտնվում է Միության խոշոր ՀԷԿ-երից մեկը: 8. Ինքնավար հանրապետություն: 9. Քաղաք՝ Հայաստանում: 10. Պետական ականավոր գործիչ: 11. Գետ՝ ՍՍՀՄ-ում: 12. Գետ՝ Հայաստանում: 13. Միութենական հանրապետության մայրաքաղաք: 14. Սովետական իշխանության առաջին տարիներին սահմանված որոշում: 15. Քաղաք՝ ՌՍՖՍՀ-ում: 16. Նշանավոր գիտնական, մաթեմատիկոս, մեխանիկ: 17. Պետական նշանավոր գործիչ, Բաքվի 26 կոմիսարներից: 18. Ադրբեջանցի մեծ բանաստեղծ: 19. Առաջին բոլշևիկյան թերթը: 20. Քաղաք՝ Ուզբեկստանում: 21. Քաղաք Լատվիայում: 22. Սովետահայ նշանավոր ֆիզիկոս: 23. «Սրերից խոփեր կոփենք» քանդակի հեղինակ: 24. Լիճ՝ ՍՍՀՄ-ում: 25. Ինքնավար հանրապետություն՝ ՌՍՖՍՀ-ում: 26. Նավթարդյունաբերության կենտրոն՝ Թուրքմենական ՍՍՀ-ում: 27. Երկրի էլեկտրիֆիկացման առաջին ծրագիրը:

## ԳԱՂՏՆԱԳԻՐ

Կոտորակով սեկտորներում

Բառաշղթան ճիշտ լրացնելուց հետո ծաղկաթերթիկներից և նրանց շուրջը գտնվող շղթաներում տեղադրեք թվերին համապատասխանող տառերը, համարիչը ցույց կտա, թե բառաշղթայի որ բառը, իսկ հայտարարը՝ հերթական որ տառը պետք է տեղադրել: Ճիշտ լրացնելուց հետո կըկարդաք ՍՍՀՄ 15 հանրապետությունների անունները:

Կազմեց՝ ՅՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ

«ՊԻՈՆԵՐ» № 11 ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Միրանույշ, 2. Նաղաշ, 3. Օտյան, 4. Նարեկացի, 7. Մարյան, 9. Պատկանյան, 10. Մանանդյան, 12. Սարոյան, 13. Կոմիտաս, 18. Ալիխանով, 19. Դուրյան, 20. Սաֆարյան, 24. Շիրազ, 25. Գառզու:

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

5. Շիրակացի, 6. Ծատուրյան, 8. Բաղրամյան, 11. Քուչակ, 14. Համալ, 15. Մադաթով, 16. Մաշտոց, 17. Ջիվանի, 21. Վարուժան, 22. Պիծակ, 23. Րաֆֆի, 26. Տիգրանյան, 27. Խորենացի, 28. Նազարյան:

Գաղտնագրի պատասխանը

Սպենդիարյան, Բաշինջաղյան, Շահմուրադյան, Հովնաթանյան:

# ՁՅՈՒՆ Է ԳԱԼԻՍ

Ձյուն է գալիս, հե՛յ, մանուկնե՛ր,
Դո՛ւրս եկեք, դո՛ւրս խաղալու,
Առած սահնակ ու դահուկներ՝
Ելե՛ք փողոց սահելու։
Ձյուն է գալիս ճերմակ ու հեզ,
Խաղաղություն բերում մեզ,
Այն հեռավոր տիեզերքից
Նոր հեքիաթ է պատմում մեզ։
Ձյուն է գալիս մութ ամպերից,
Սակայն լույս է բերում մեզ,
Լուսնի գրկից ու ամպերից
Մեծ գաղտնիք է պատմում մեզ։
Ձյուն է գալիս ու մեզ պատմում,
Թե ոնց ինքը ձյուն դարձավ
Եվ թե ինչպես թիթեռի պես
Թևավորվեց, ցած իջավ։
Ձյուն է գալիս լուսնի գրկից,
Լույսի շողեր տալիս մեզ,
Եվ անսահման տիեզերքի
Նոր հեքիաթն է պատմում մեզ։



ԳԵՂԱՄ ՆԵՐՍԻՍՅԱՆ Երևանի № 84 դպրոցի





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ.Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77306





«ՍՍՀՄ—60 ցուցահանդեսից

Շապիկի 1-ին էջին՝ Է. Խարազյան «Սեպտեմբերի 1», շապիկի 4-րդ էջին՝ Կ. Սմբատյան «Մենք պարում էինք Էստոնիայում», Ալ. Գրիգորյան «Բարեկամության երգ»։

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ռ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Հանձնված է արտադրության 30.09.1982 թ.։ Ստորագրված է տպագրության 25.11.1982 թ.։ ՎՖ 10021։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 63962։ Պատ. 2180։ Գինը՝ 15 կ.։
ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.